Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՐԵՔ ՏԱՐԻՆ

## (ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐԸ)

*Այսօր լրացավ գերմանա-ֆաշիստական ավազակային բանդաների կողմից Սովետական Միության վրա կատարված չարագործ հարձակման երեք տարին: Երեք տարի սովետական ժողովուրդը արիաբար Հայրենական պատերազմ է մղում չար դավթիչների դեմ: Մեր երկրի ժողովուրդները պատերազմի առաջին օրերից միահամուռ կերպով պաշտպան կանգնեցին իրենց Հայրենիքին: Կարմիր Բանակը 3·000 կիլոմետր երկարությամբ ռազմաճակատում արյունահեղ ծանր մարտերում կասեցնում էր գերմանա-ֆաշիստական բազմամիլիոն, ամենանոր ռազմական տեխնիկայով հագեցված բանակը, մարդկային ուժի և սպառազինության վիթխարի կորուստ պատճառում նրան: Ֆաշիստական ռազմական մե-*

քենան, որը սրով և հրով էր անցել եվրոպական տաս երկրների քաղաքներով և գյուղերով, մեր բանակի դեմ մղված մարտերում վրիպեց:

Դեռևս պատերազմի առաջին տարում Կարմիր Բանակը գերմանացիների համար ջարդ սարքեց Մոսկվայի մոտ, ջախջախելով թշնամու հարվածային ընտիր զորքերը: Վերջին մեկ ու կես տարվա ընթացքում, Ստալինգրադի մոտ գերմանա-ֆաշիստական զորքերը ջախջախվելու ժամանակվանից ի վեր, թշնամին արդեն չկարողացավ ուշքի գալ: Սովետական զորքերը ամբողջ ռազմաճակատում հարձակում ծավալելով, ջախջախեցին գերմանացիների պաշտպանողական հզոր սիստեմները Ստալինգրադի, Օրյոլի, Սմոլենսկի, Լենինգրադի մոտ, Միուս գետի, Դնեպրի վրա, Պերեկոպի, Սևաստոպոլի մոտ, Կարելական պարանոցում, Սվիր գետի վրա, անցան Դոն, Հյուսիսային Դոնեց, Դեսնա, Վոլխով, Դնեպր, Հարավային Բուգ, Դնեստր, Պրուտ, Սերետ, Նարվա, Սվիր ջրային խոշոր բնագծերը, և դրանով իսկ ցույց տվին, որ բոլոր պատնեշներն ու բերդերը, որոնց մասին այնքան շատ շաղակրատում էին հիտլերականները, չեն կարող դիմա-



նալ, եթե այդ պատնեշների ու բերդերի խորտակման ու հաղթահարման համար լրջորեն մարտնչում են մարտերում փորձված ու կոփված զորքերը:

Գերագույն Գլխավոր հրամանատարության հմուտ ստրատեգիայով, սովետական գեներալների ու սպաների մտածված ու վճռական տակտիկայով, իր զինվորների հերոսությամբ ու զինվորական վարպետությամբ, վերջապես, իր ռազմական հզոր տեխնիկայով Կարմիր Բանակը մի շարք լուրջ պարտություններ պատճառեց գերմանացիների, իտալացիների, ռումինացիների, հունգարացիների, ֆինների միացյալ ընտիր բանակներին: Ընդմիշտ պատմության մեջ կմտնեն մեր զորքերի մեծ հաղթանակները Մոսկվայի, Ստալինգրադի մոտ և Կովկասում, Օրյոլի ու Սմոլենսկի մոտ, Լենինգրադի տակ և Դոնբասում, Դնեպրի վրա և Ղրիմում, Աջափնյա Ուկրաինայի, Դնեստրի շրջաններում և Կարելական պարանոցում:

Հարձակողական մարտերի ժամանակամիջոցում սովետական զորքերը ազատեցին թշնամու կողմից օկուպացված մոտ մեկ ու կես միլիոն քառակուսի կիլոմետր տերիտորիա, արևմուտք առաջ շարժվեցին դրե-

*թե երկու հազար կիլոմետր, ռազմաճակատի մեծ տարածության վրա հասան մեր պետական սահմաններին և մտան Ռումինիայի տերիտորիան: Կարմիր Բանակի հաղթանակները ֆաշիստական գերությունից ազատագրություն բերեցին սովետական միլիոնավոր մարդկանց: Մեր զորքերը գերմանացիներին զրկեցին արդյունաբերական հումքի և պարենամթերքի աղբյուրներից՝ նրանց կողմից օկուպացված մարզերում, իսկ արևելքի «կենսական տարածությունը», որի մասին երազում էին հիտլերականները, դարձավ գերմանական միլիոնավոր զինվորների գերեզմանը, ֆաշիստական ռազմական տեխնիկայի հսկայական գերեզմանոց:*

*Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում Կարմիր Բանակին հսկայական օգնություն ցույց տվին սովետական քաջարի պարտիզանները: Պատերազմի երեք տարվա ընթացքում նրանք գործում էին թշնամու թիկունքի ու շտաբների վրա, ավերում նրա կոմունիկացիաներն ու կապը, անողոքաբար ոչնչացնում գերմանա-ֆաշիստական սրիկաներին: Սովետական պարտիզանները սովետական շատ հազարավոր մարդկանց փրկեցին ոչնչացու-*



*մից և ֆաշիստական ստրկության քշվելուց:*

*Պատերազմի երեք տարվա ընթացքում գերմանա-ֆաշիստական զորքերը սովետա-գերմանական ռազմաճակատում մղված մարտերում կորցրին ավելի քան 7 միլիոն 800 հազար զինվոր ու սպա՝ սպանված և գերի ընկած, մոտ 70·000 տանկ, 60·000 ինքնաթիռ, ավելի քան 90·000 հրանոթ:*

*Այդ նույն ժամանակամիջոցում մեր զորքերի կորուստները կազմեցին 5·300 հազար մարդ՝ սպանված, գերի ընկած և անհետ կորած, 49·000 տանկ, 30·128 ինքնաթիռ, 48 հազար հրանոթ:*

*Կարմիր Բանակի հաղթություններին զգալի չափով օժանդակեցին մեր դաշնակիցները՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները և Մեծ Բրիտանիան, որոնք մեզ մատակարարում էին խիստ արժեքավոր ստրատեգիական հումք և սպառազինություն, սիստեմատիկ ռմբակոծության էին ենթարկում Գերմանիայի ռազմական օբյեկտները և այդպիսով ջլատում վերջինիս ռազմական կարողությունը:*

Այսպես, Կարմիր Բանակը հայրենական պատերազմի առաջին ժամանակաշրջանում վիժեցնելով կայծակնային պատերազմի

հիտլերյան պլանները, հետագա ժամանակաշրջանում խորտակեց ու թաղեց թշնամու պաշտպանողական ստրատեգիան, սովետական զավթված տերիտորիաները ամրապընդելու նրա հաշիվները: Գերմանա-փաշիստական բանակը պարտված դուրս եկավ և այժմ կանգնած է լիակատար ջախջախման առաջ:

*Այս է Հայրենական պատերազմի անցած երեք տարվա պատերազմական հանրագումարը:*

*Պատերազմ սկսելով Սովետական Միության դեմ, հիտլերյան խմբերխավարները ենթադրում էին, որ Կարմիր Բանակի պատերազմական առաջին իսկ անհաջողությունները կխախտեն մեր երկրի ժողովրդական մասսաների վստահությունը իրենց իշխանության նկատմամբ, դժտություն առաջ կբերեն ՍՍՌՄ ժողովուրդների միջև, կքայքայեն բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի դաշինքը, որի վրա հիմնված է Սովետական պետությունը: Իրականության մեջ դուրս եկավ, որ պատերազմի ժամանակվա դժվարությունները միայն համախմբեցին սովետական թիկունքի աշխատավորներին, նրանց է՛լ ավելի ամուր կապեցին իրենց սովետական ժողո-*



*վրդական իշխանության հետ: Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը Հայրենական պատերազմի ընթացքում ամրապնդվեց և կոփվեց ինչպես պողպատ: Բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի դաշինքը, որ հիմնված է սովետական հասարակության աշխատավորների կենսական շահերի վրա, է՛լ ավելի ամրապնդվեց:*

*Գերմանական ճիվաղները հույսը դրել էին նաև այն բանի վրա, թե սովետական արդյունաբերությունը ընդունակ չի լինի հաղթահարելու մասսայական մասշտաբով ժամանակակից սպառազինություն արտադրելու դժվարին խնդիրները, թե մեր տրանսպորտը անընդունակ կլինի կատարելու ռազմական փոխադրումները, իսկ գյուղատնտեսությունը՝ բանակին և ժողովրդին պարենամթերք և արդյունաբերական հումք մատակարարելու գործը: Սակայն գերմանական վայ-նվաճողների այդ պլանները ցնդեցին օճառի պղպջակի նման: Պատերազմի երեք տարվա հետևանքով հյուծված դուրս եկավ ոչ թե Սովետական Միության էկոնոմիկան, այլ հիտլերյան Գերմանիայի էկոնոմիկան: Գերմանացիների կրած պարտությունները սովե-*

ռուս-գերմանական ռազմաճակատում և դաշնակիցների ավիացիայի հարվածները ջախջախեցին Գերմանիայի ռազմատնտեսական կարողությունը: Միևնույն ժամանակ սովետական երկրի արդյունաբերությունը, տրանսպորտը և գյուղատնտեսությունը հաջողությամբ բռնեցին պատերազմի քննությունը: Սովետական ժողովուրդը իր ուժերը չի խնայում Հայրենիքը պաշտպանելու համար և ոգեշնչված է իր ստեղծած Սովետական պետությունը թշնամու բոլոր ոտնձգություններից կրծքով պաշտպանելու վճռականությամբ: Հայրենական պատերազմն առաջ բերեց ժողովուրդների չտեսնված հայրենասիրական վերելք, ժողովրդական մասսաների ստեղծագործական անսպառ եռանդ՝ Կարմիր Բանակին աջակցություն ցույց տալու համար: Ներկայումս, պատերազմի չորրորդ տարվա շեմքին, Սովետական Միությունը ունի ռազմական հզոր տնտեսություն, որը բավարարում է Կարմիր Բանակի զենքի, ռազմամթերքի, պարենամթերքի և հանդերձանքի պահանջները: Սովետական բանվորները, կոլխոզնիկները, ինտելիգենցիան, Սովետական Միության ժողովրդական տնտեսությունը ի սպաս դնելով ռազմաճակատին, Կարմիր



Բանակին ապահովեցին այն ամենով, ինչ անհրաժեշտ է հաղթանակ տանելու համար: Տանկերի ու ավիացիայի քանակի տեսակետից թշնամու երբեմնի գերակշռությունը վաղուց հաղթահարված է, իսկ Սովետական Միության տնտեսական հնարավորությունները աճում են օրեց օր:

Այսպես, սովետական ժողովուրդը խորտակեց այն բոլոր հաշիվները, որ թշնամին դրել էր սովետական հասարակակարգի անկայունության / վրա: Ժողովուրդների եղբայրական անխորտակելի համագործակցության վրա հիմնված Սովետական պետությունը պատերազմի ընթացքում ամրապնդվեց և հաստատուն դարձավ, իսկ ժողովուրդների ճնշման վրա հիմնված ֆաշիստական պետությունը չբռնեց պատերազմի քննությունը և կանգնած է անխուսափելի կատաստրոֆի առաջ:

Այս է Հայրենական պատերազմի անցած երեք տարվա քաղաքական հանրագումարը:

Երեք տարի առաջ հիտլերականներն իրենց համարում էին Եվրոպայի իշխողները: Ստրկացնելով Արևմտյան Եվրոպայի երկրները, Գերմանիան ավազակային դաշինքի մեջ ներգրավեց Իտալիային, Ռումի-

նիային, Ֆինլանդիային, Հունգարիային, Բուլղարիային:

Տարածելով և պաշտպանելով իր գործակալությունը չեզոք պետություններում, Գերմանիան ուժեղ ճնշում էր գործ դնում նրանց վրա և նրանց կողմից լուրջ զիջումներ ձեռք բերեց իր օգտին: Հիտլերյան Գերմանիան սպառնում էր աշխարհի բոլոր ժողովուրդների կյանքին ու անկախությանը: Ազատասեր ժողովուրդները այն ժամանակ նոր էին սկսում միավորվել հակահիտլերյան միասնական լագերի մեջ: Մեր երկիրը փաստորեն միայնակ դիմացավ հիտլերյան Գերմանիայի ու նրա դաշնակիցների բոլոր ուժերի գրոհին:

Այժմ դրությունը արմատապես փոխվել է: Ներկայումս ոչ թե հիտլերյան Գերմանիան է հարձակվում ու հաջողություններ ձեռք բերում՝ ինչպես այդ տեղի էր ունենում երեք տարի առաջ, այլ ընդհակառակը, դաշնակից պետությունների զինված ուժերը ամենուրեք խփում ու նեղում են գերմանա-ֆաշիստական զավթիչներին: Դաշնակից պետությունները թշնամուն գերազանցում են զորքի ու սպառազինության քանակի ու որակի մեջ: Դաշնակից պետությունների միասնությու-



նըն այժմ ամուր է, ինչպես երբեք: Դաշնակից պետություններն ունեն հիտլերյան Գերմանիայի զինված ուժերը լիովին ջախջախելու համաձայնեցված պլաններ: Հյուսիսային Ֆրանսիայում բրիտանական և ամերիկյան զորքերի փայլուն կերպով իրագործված ներխուժումը, դաշնակիցների զորքերի հաջող հարձակումը Իտալիայում՝ ցույց են տալիս, որ Գերմանիան այսուհետև հարկադրված կլինի Եվրոպայի տերիտորիայում պատերազմել ինչպես Կարմիր Բանակի դեմ, այնպես էլ մեր դաշնակիցների՝ Անգլիայի ու ԱՄՆ-ի զորքերի դեմ:

Ներկայումս, երբ Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների բանակների ընդհանուր ջանքերը անմիջականորեն ուղղված են գերմանացիների կողմից տիրացված երկրների ազատագրման կողմը, երբ Միավորված ազգերի զորքերը երկաթե ձեռքով բռնում են հիտլերյան Գերմանիայի և նրա եվրոպական վասալների կոկորդից, հիտլերյան բանդան արդեն ոչ մի միջոցով չի կարող կանխել իր անխուսափելի և լիակատար պարտությունը: Այժմ բոլորին պարզ է, որ հիտլերականները, որոնք մտադրվել էին նվաճել ամբողջ աշխար-

հը, իրենց ուժից վեր խնդրի էին ձեռնամուխ եղել: Հիտլերյան կլիկի դրությունը հիշեցնում է Կրիլովի առակի այն գորտի բախտը, որ ցանկացել էր իր մեծությամբ չափվել եզան հետ, սկսել էր ուռչել և փքվել, բայց փքվելուց պայթել էր ու սատկել:

Ֆաշիստական ավազակային բլոկը քայքայվում է: Ֆաշիստական Գերմանիան պատերազմական ծանր պարտությունների հետևանքով կանգնել է կործանման եզրին: Իտալիան, Գերմանիայի նախկին դաշնակիցը, ներկայումս պայքար է մղում գերմանական իմպերիալիստների դեմ: Ֆինլանդիայի կառավարող հանցագործ կլիկը Հիտլերին հաճոյանալու համար մերժելով Սովետական Միության հաշտության մեծահոգի առաջարկները, Ֆինլանդիային արդեն փաստորեն հասցրել է ռազմական կատաստրոֆի: Հիտլերի մյուս վասալները՝ Ռումինիան, Հունգարիան, Բուլղարիան կախված են անդունդի վրա: Ֆաշիստական Գերմանիայի եվրոպական գործակիցները բավականաչափ ժամանակ և բոլոր անհրաժեշտ պայմանները ունեին Գերմանիայից իրենց կապերը խզելու և իրենց երկրները ավերումից ու ամայացուցիչ պատերազմից



փրկելու համար: Սակայն հիտլերականների գործակիցները շատ ամուր են մերվել հիտլերյան ավազակային շայկային և չեն մտահոգվում իրենց ժողովուրդների ճակատագրով: Հիտլերի ֆիննական, ռումինական, հունգարական, բուլղարական ծառաները գերադասում են գործել ի վնաս իրենց երկրների ժողովուրդների շահերի և հօգուտ ֆաշիստական Գերմանիայի: Հիտլերյան ծառաները գործը հասցրել են այնտեղ, որ նրանց երկրները օկուպացված են գերմանական զորքերով: Ջանալով ձգձգել պատերազմի փոխադրումը Գերմանիայի տերիտորիան, հիտլերականները Ֆինլանդիան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան դարձրել են Գերմանիայի պաշտպանության նախադաշտ: Սակայն այդ երկրների ժողովուրդները, որոնց կառավարողները վաճառվել են հիտլերականներին, այժմ հնարավորություն ունեն, դաշնակից պետությունների զինված ուժերի օժանդակությամբ, իրենց երկրներից վռնդելու գերմանական օկուպանտներին ու նրանց կամակատարներին: Հիտլերին վասալ դարձած երկրների ժողովուրդները միայն այդ միջոցով կարող են ազատության իրավունք նվաճել իրենց համար:

*Հիտլերականների տիրապետությունը Եվրոպայում ակնառու կերպով ցույց տվեց, որ ֆաշիստները ժողովուրդների ազատությունը և անկախությունը խեղդողներ են: Միևնույն ժամանակ միավորված ազգերի բանակները Եվրոպա են գնում որպես ժողովուրդների ազատարարներ՝ հիտլերյան բռնապետությունից, և ֆաշիստների կողմից ճնշված երկրների հողն են մտնում ժողովուրդների ազատությունը և անկախությունը վերականգնելու նպատակով: Հենց դրա համար էլ գերմանացիների կողմից ստրկացված ժողովուրդները այժմ օգնություն են ցույց տալիս և առաջիկայում գնալով է՛լ ավելի մեծ օգնություն ցույց կտան Միավորված ազգերի զինված ուժերին:*

Այսպես, պատերազմի ընթացքում ամբողջովին խորտակվեցին հիտլերյան զավթիչ-իմպերիալիստների արտաքին քաղաքական բոլոր հաշիվներն ու պլանները,— հիտլերյան ավազակային բլոկը սնանկացավ, իսկ ազատասեր ժողովուրդների դաշինքը աճեց ու դարձավ անխորտակելի ուժ և այժմ բոլոր հնարավորություններն ունի խորտակելու ֆաշիստական ագրեսորների Եվրոպայի ավազակային բույնը, պատժելու



ժողովուրդներին տառապանքներ ու աղետներ պատճառողներին, վերջ տալու զավթողական պատերազմները կրկնելու հնարավորությանը:

*Այս է պատերազմի երեք տարվա* արտաքին քաղաքական *հանրագումարը:*

*Պատերազմի երեք տարվա պատերազմական և քաղաքական հանրագումարները ամենայն ակնհայտությամբ ցույց են տալիս, որ հիտլերյան Գերմանիան արդեն տանուլ է տվել պատերազմը և մոտենում է նրա ճակատագրական ջախջախման ժամը: ՍՍՌՄ-ի, Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի բանակները բոլոր կողմերից դրոհով ճանապարհ են բաց անում իրենց համար դեպի ֆաշիստական Գերմանիայի կարևորագույն կենսական կենտրոնները, և հեռու չէ այն ժամանակը, երբ կազդարարվի այդ ջանքերի հաղթանակը: Պատերազմն այժմ մոտենում է վախճանին: Սակայն լիակատար հաղթանակի հասնելու ճանապարհի մնացած մասը հեշտ չի լինի: Պատերազմը թևակոխել է ամենակատաղի, վճռական և առավել դժվարին փուլը: Ֆաշիստական խոցված և հետապնդված գազանը կատաղորեն կռվելու է: Պատերազմը որքան ավելի է մոտենում Գերմանիայի կենսական կենտրոններին,*

այնքան ավելի համառ կլինի հիտլերականների դիմադրությունը: Հարկ կլինեն ևս մի քանի հուժկու հարվածներ թշնամուն վերջնականապես խորտակելու և հողմացրիվ անելու համար:

Հասկանալի է, որ այդ խնդիրները կարելի է կատարել միայն դաշնակից բոլոր երկրների բանակների համատեղ վճռական գործողություններով, հիտլերյան Գերմանիայի և նրա վասալների դեմ ժամանակին ակտիվ պայքարի մեջ մտցնելով Միավորված ազգերի հիմնական զինված ուժերը:

Կարելի է չտարակուսել, որ դաշնակից պետությունները, որոնք նպատակ են դրել աշխարհն ազատել ֆաշիստական ջարդարարներից, իրենց բոլոր ուժերը գործի կդնեն այդ մեծ նպատակին հասնելու համար:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԲՅՈՒՐՈ**

---



## ՕՏԱՐԵՐԿՐՅԱ ՄԱՄՈՒԼՆ ՈՒ ՌԱԴԻՈՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ժամանակակից պատերազմը, իր աշխարհագրական ընդգրկման, այդ պատերազմի մեջ մտցված ուժերի, այդ պատերազմից իրենց լուծումը սպասող պրոբլեմների տեսակետից, ավելի մեծ չափով համաշխարհային բնույթ է կրում, քան 1914—1918 թվերի պատերազմը:

Այս պատերազմի ելքից է կախված ողջ մարդկության բախտը: Պատերազմի ընթացքում Ստալինգրադի ճակատամարտերից հետո անգլո-սովետա-ամերիկյան կոալիցիայի օգտին տեղի ունեցած արմատական բեկումը անդրադարձավ միջազգային ամբողջ կյանքի, համաշխարհային ամբողջ քաղաքականության վրա:

Ռազմաճակատում Կարմիր Բանակի կողմից հիտլերյան կլիկին հասցված և հասցվող յուրաքանչյուր հարված արձա-

գանք է գտնում Երկրագնդի հարյուրավոր միլիոն մարդկանց տրամադրության և վարմունքի մեջ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի մասին ասած իր զեկուցման մեջ ընկեր Ստալինը ասել է. «Կարմիր Բանակի հաղթանակների արդյունքներն ու հետևանքները սովետա-գերմանական առճակատի սահմաններից շատ ավելի հեռու անցան, փոխեցին համաշխարհային պատերազմի հետագա ամբողջ ընթացքը և ձեռք բերեցին միջազգային խոշոր նշանակություն»:

Կյանքը ամեն քայլափոխում հաստատում է ստալինյան խոսքերի ամբողջ ճշմարտացիությունը:

Այդ հաստատում են նաև արտասահմանյան մամուլի ու ռադիոհաղորդումների բազմիցս արտահայտված կարծիքները:

Այս տարվա փետրվարի 19_ին Բրազզավիլի ռադիոն նշել է.

«Կարմիր Բանակը դարձել է Եվրոպայի բոլոր մեծ հույսերի մարմնավորումը: Առանց նրա մենք պատերազմը տանուլ կտայինք և մայր ցամաքն ընդգրկած ճակատամարտերը կտարածվեին ամբողջ երկ-



րագնդի վրա: Առանց նրա մեր մարտիկների զոհերը իզուր կլինեին: Առանց նրա Եվրոպան տառապելիս կլիներ հիտլերյան լծի տակ: Մեր հիացմունքը Կարմիր Բանակի հերոսությամբ ու մեծությամբ երբեք չափազանցված չի լինի»:

Նույն ռադիոն փետրվարի 21-ին հաղորդել է.

«Դժվար է պատկերացնել, թե ինչ կպատահեր մարդկությանը, եթե քաջարի ռուս մարտիկները չկարողանային ետ մղել գազանացած հիտլերյան հորդաների գրոհը»:

Այս տարվա ապրիլի սկզբին կանադական «Ջորնել» թերթը գրել է.

«Ստալինգրադի մոտ սկսված Կարմիր Բանակի հարձակումը անդադրում շարունակվում է և այժմ սովետական զորքերն արդեն իրենց ետևն են թողնում Բեսարաբիան և մտնում են Եվրոպական բերդը... Եվրոպա մտած Կարմիր Բանակի հետ միասին համաշխարհային պատմության մեջ մտել է մի նոր հզոր գործոն... Ամենախելացի քաղաքականությունն է նրա հետ համագործակցել և նրան շնորհակալ լինել

այն օգնության համար, որի շնորհիվ կանխվեց համաշխարհային աղետը»:

Արտասահմանյան մամուլում կարելի է գտնել շատ այդպիսի կարծիքներ Կարմիր Բանակի մասին: Այդ նույն մամուլը նույնքան լայն կերպով մեկնաբանում է նաև սովետական զորքերի կողմից գերմանական ռազմական մեքենային հասցված հարվածների չափն ու բնույթը: Այսպես՝ ամերիկյան «Նյու-Յորք Թայմս» թերթը գրում է.

«Ռուսաստանից գերմանացիների կատարած նահանջի հետ համեմատած Նապոլեոնի փախուստը Մոսկվայից հանդիսանում է աննշան պարտություն»:

Ռազմական և քաղաքական տեսաբանները, հասարակական և պետական գործիչները աշխատում են բացատրել Կարմիր Բանակի հաղթանակների պատճառները:

Այս տարվա փետրվարի սկզբին թյուրքական ժուռնալիստ Սադակը «Ակշամ» թերթում գրել է.

«Այս պատերազմը բարձրացրեց Սովետական Ռուսաստանը ծածկող խորհրդավորության քողը: Լենինի և Ստալինի երկիրը մեր առաջ կանգնեց բոլորովին այլ լույսի



մեջ, քան թշնամիները նկարագրում էին: Սովետական Ռուսաստանը ցուցաբերեց անսպասելի ռազմական ուժ, որը կանգնեցրեց, ցնցեց և ստիպեց նահանջել ամբողջ աշխարհը ճզմած գերմանական հսկայական ռազմական մեքենան: Այդ երկիրը նաև ցույց տվեց, որ ներքին միասնության և կայունության տեսակետից նա հանդիսանում է ամրության ու միաձուլության օրինակ»:

Այս տարվա ապրիլի 18-ին անգլիական ռադիոն հաղորդել է մեկնաբան Բրենտ Վուդի տեսությունը, որտեղ ասված է.

«Այժմ ամեն ոք տեսնում է, որ ռուսների մեծ պլանը հաջողությամբ է պսակվել: Բայց ոչ մի րոպե չպետք է աչքաթող անել, թե ինչու այդ պլանը հաջող դուրս եկավ: Չպետք է մոռանալ, թե ինչ դեր են խաղացել այդ բանի մեջ ինչպես Ռուսաստանի ղեկավարները, այնպես էլ ռուս ժողովուրդը: Ես նկատի ունեմ. թե՛ նրանց, ովքեր պայքարում են ռազմաճակատում և թե՛ նրանց, ովքեր աշխատում են թիկունքում,— տղամարդկանց և կանանց, երեխաներին և մեծահասակներին:

Ռուսների պլանի հաջողությունը բա-

ցատրվում է երեք պատճառով. այդ պլանը ճիշտ էր մտածված, ռուս հրամանատարները արիություն ունեցան այդ պլանը կատարել իր ամբողջ հետևանքներով, և վերջապես, ռուս ժողովուրդը, չնայած մեծագույն տառապանքներին, ոչ մի բողոք չգողաց»:

Կարմիր Բանակի 26-րդ տարեդարձին նվիրված հոդվածում Լոնդոնի «Թայմս» թերթը գրել է.

«Գերմանացիները պատերազմը սկսելիս վայելում էին աշխարհի խոշորագույն ռազմական կազմակերպիչների հռչակ և իրենք դրան անսահման հավատում էին: Սովետական Միությունը այս ասպարեզում դեռ ոչ մի համբավ չուներ: Բայց ժամանակի ընթացքում նա ցույց տվեց կազմակերպության հրաշքներ, որ նրանից պահանջեց այդ չտեսնված հարձակումը, և նա անշուշտ իր ահեղ հակառակորդին գերազանցեց և շարունակում է գերազանցել հենց այն բնագավառում, որտեղ նա ամենից ավելի ուժեղ է»:

Սովետական կազմակերպության այս գերազանցությունը նշում է նաև շվեդական «Գետեբորգս պոստեն» թերթը, որը ապրիլի 6-ին առաջնորդող հոդվածում գրել է.



«Ռուսական գրահատանկային բանակները այնպիսի խնդիրներ են լուծել, որ գերմանացիները երբեք չեն կարողացել: Նրանք դարձել են տարվա եղանակներից անկախ, ձնից ու ցեխից անկախ: Նրանց կոմունիկացիաների գծերը այժմ այնքան են երկարացել, որ արդեն վաղուց հրաշք է դարձել, թե ինչպես են ռուսների հայթայթման օրգանները կարողացել լուծել իրենց առաջ դրված խնդիրները և գլուխ հանել առաջավոր մասսայական ռեզերվներ փոխադրելուց»:

Նույն խնդրի, այն է՝ ռազմաճակատի հայթայթումը կազմակերպելու մասին, որը արդի մեքենայացված պատերազմի պայմաններում այնքան կարևոր պրոբլեմ է, ապրիլի 8-ին գրել է նաև «Ասոշիեյտեդ Պրեսս»-ի Լոնդոնի թղթակիցը: Այդ թղթակիցը նշում է, որ անգլիական և ամերիկյան գեներալները, որոնք մշակում են արևմտյան Եվրոպա ներխուժելու պլանը, զարմացած են Կարմիր Բանակի հարձակման տեմպերի վրա: Նա մեջ է բերում ամերիկյան մի գեներալի (այդ գեներալը մեծ փորձ ունի Թունիսում և Իտալիայում անգլիացիների հայթայթման բնագավառում) հետևյալ խոսքերը. «Մենք ապշել

ենք, թե ինչպես են ռուսները շարունակում շաբաթ շաբաթի ետևից այդպիսի տեմպով առաջ շարժվել»: Թղթակիցը ավելացնում է, թե Կարմիր Բանակին հատուկ է հայթայթման փայլուն հանճար:

Բոլոր տեսաբանների հատուկ ուշադրությունն է գրավում Կարմիր Բանակի ստրատեգիան ու տակտիկան: Ամերիկյան «Ստար» թերթը (Կանզաս-Սիտի) այս առթիվ գրել է.

«Ռուսաստանում կամպանիայի այժմյան փուլը ըստ երևույթին երկար տարիներ կուսումնասիրվի որպես օրինակ համարձակ ստրատեգիայի և ռազմաճակատում ու թիկունքում փայլուն կերպով իրագործվող գործողությունների»:

Ընդգծելով Ստալինի այն խոսքերը, թե գերմանացիները ակուրատ և ճշգրիտ են իրենց գործողությունների մեջ՝ երբ իրադրությունը հնարավորություն է տալիս իրականացնելու կանոնադրության պահանջները, բայց դառնում են անօգնական՝ երբ իրադրությունը բարդանում է, թերթը արձանագրում է.

«Դրա հակառակ՝ ռուսները պատերազմի անբարենպաստ սկզբից հետո հիանալի վե-



րականգնեցին իրենց ուժերը և այն ժամանակվանից ի վեր մինչև հայտաբերել են այնպիսի հնարագիտություն, որը զարմացրել է բարեկամներին և շփոթեցրել թշնամիներին»:

Լոնդոնի «Թայմս» թերթը, ամփոփելով այս տարվա մարտի 4-ից հարավում Կարմիր Բանակի սկսած հաջող հարձակման արդյունքները, ընդգծում է, որ «բարոյական կամ հոգեկան կարգի պատճառները այստեղ առաջին տեղերից մեկն են գրավում»:

Այդ նույն թերթը ապրիլի 14-ին գրել է. «Կարմիր Բանակը ապրել է այնպիսի փորձություններ, որոնք քայքայիչ ազդեցություն կունենային ամենաամուր նյութից կազմված ամեն մի այլ բանակի վրա: Նա այդ փորձություններից դուրս եկավ, չկորցնելով համառ պաշտպանություն և վերջապես մարտերի երկարատև ժամանակաշրջանի ընթացքում իր հարձակողական թափը: Փոխանակ թուլանալու և շատ դյուզ դառնալու՝ մանևրելիս, գրոհելիս, հաջողությունն օգտագործելիս և հետապնդելիս նա իր մեջ զարգացրել է նոր շարժունակություն, ավելի մեծ ավյուն, ա-

ճած արիություն և ավելի հմուտ տակտիկա»։

«Կարմիր Բանակը գտնվում է հարձակողական թափի մեջ»,— վերջացնում է թերթը։

Ամերիկյան «ՊՄ» թերթի տեսաբան Վերները ապրիլի 16-ին շատ լակոնական բանաձևում բնորոշել է Կարմիր Բանակի հաջողությունների պատճառը։ Նա գրել է.

«Սովետական Միության տարած զարմանալի հաղթանակների գաղտնիքը շատ պարզ է— դա հզորությունն է գործողության մեջ»։

Ամերիկյան «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը ապրիլի 7-ին «Հաղթանակի կամք» առաջնորդող հոդվածում գրել է.

«Կարմիր Բանակի հաջողությունները ապահովվել են կանխատեսությամբ, նախապատրաստվածությամբ, հարմար րոպեն ընտրելու կարողությամբ, բարձրագույն կազմակերպվածությամբ, ստրատեգիական արվեստով և տակտիկական հնարագիտությամբ, որի շնորհիվ Կարմիր Բանակը կարողացել է օգտագործել զորքի և զենքի բոլոր տեսակները՝ սկսած հեծելազորից մինչև սավառնակը,— կարողացել է հաղ-



թահարել բնական արգելքները, և ցեխը,
ձյունը, շոգն ու ցուրտը դարձնել իր դաշ-
նակիցները։ Սակայն բացի մոտորներն ու
ռեսուրսները, գոյություն ունի պայքարե-
լու և ինչ գնով էլ լինի հաղթելու կամք»։

Անգլիացի հայտնի զինվորական մասնագետ գեներալ-մայոր Ֆուլլերը «Նյուս ուիկ» ժուռնալում ասում է, թե անհրաժեշտ է սովորել ռուսներից։

Թշնամուն խփելն ու հաղթելը Կարմիր Բանակից սովորելու կոչեր դաշնակիցների բանակում վերջերս շատ հաճախ են լսվում։

***

Կարմիր Բանակի հաջողությունների պատճառը մինչև այժմ չի հասկացել և ընդունակ չէ հասկանալու թշնամին։ Սովետական մի ժուռնալիստի դիպուկ արտահայտությամբ հիտլերականները չեն կարողանում ո՛չ ռազմաճակատից կտրվել և ո՛չ թիկունքում տատանել*)։ Գեբբելսի պրո-
պագանդան ինքն իր ստի մեջ խճճվել է։

*) Բառախաղ։ Ռուսերեն՝ оторваться на фронте и отовраться в тылу.

Անգլիացի տնտեսագետ Ջեյմս Ֆերգյուսոնը ապրիլի սկզբին սովետա-գերմանական ռազմաճակատի հարավային հատվածում տեղի ունեցող մարտերի մասին շատ դիպուկ կերպով հայտարարել է հետևյալը. «Եվրոպայի հարավ-արևելյան անկյունը գերմանացիների համար վտանգավոր վայր է: Նա սպառում է գերմանական պրոպագանդայի մինիստրության ռեսուրսները, ճիշտ ինչպես նաև գերմանական գլխավոր հրամանատարության ռեսուրսները»:

Բնորոշ է և պատահական չէ այն փաստը, որ վերջին 15 ամսվա ընթացքում, երբ հիտլերյան բանակը կրում է մի պարտություն մյուսի հետևից, գերմանական ամբողջ մամուլում և պրոպագանդայում ոչ մի փորձ չի եղել տալու պարտության պատճառների քիչ թե շատ լուրջ վերլուծություն: Գերմանական մի տնտեսագետ այս տարվա մարտամսին Հարավային ռազմաճակատի սովետական հրամանատարությանը վերագրել է «մուրճ ու մանգաղի» տակտիկա: Այդ տնտեսագետի ասելով, մինչդեռ Ուկրաինական առաջին ռազմաճակատի հրամանատար մարշալ Ժուկովը, հենվելով Կիև—Լուցկ գծի վրա, կարծես մանգաղով կտրում է գեր-



մանական զորքերի հսկայական մասսան, Ուկրաինական երկրորդ և երրորդ ռազմաճակատների հրամանատարներ մարշալ Կոնևը և բանակի գեներալ Մալինովսկին կարծես մուրճով խփում են կտրված գերմանական զորամասերի գլխին և նրանց ջարդ ու փշուր են անում: Հարավային ռազմաճակատում տեղի ունեցող հսկայական գործողության այս սիմվոլիկ պատկերումը ի հարկե ոչ մի կերպ գերմանացիներին չի բացատրում, թե ինչու նրանց «անպարտելի» անունը հանած բանակը պարտություն է կրում:

Հիտլերն ու Գեբբելսը չեն կարող գերմանական ժողովրդին ասել ամենագլխավորը, այն՝ որ պատերազմը դրսևորել է Կարմիր Բանակի, նրա Գերագույն Գլխավոր Հրամանատարության, նրա ստրատեգիայի ու տակտիկայի, նրա կազմակերպության գերազանցությունը: Արդարացի ազատագրական պատերազմ մղող սովետական ժողովրդի բարոյական գերազանցությունը: Այս ասել՝ կնշանակի տապալել այն խարխուլ գիրքը, որի վրա դեռ հենվում է հիտլերյան ավանտյուրիստական ռեժիմը:

Եվ հիտլերականները շարունակում են

լկտիաբար և անխնա սանել: Միայն Երբեմն գերմանական ռադիո-տեսաբան, գեներալ-լեյտենանտ Դիտմարը ատամները սեղմած՝ հարկադրված խոստովանության որևէ խոսք է արտասանում, քանի որ նրա ռազմական տեսությունները նույնպես նկատի ունեն գերմանական այն զինվորներին ու սպաներին, որոնք իրենց սեփական կաշվի վրա են փորձում սովետական զենքի գերակշռությունը: Այսպես, այս տարվա մարտի 21-ի տեսության մեջ, որի վերնագիրն է՝ «Բուգի և Դնեստրի ափին», Դիտմարը ակամա խոստովանում է հետևյալը. «Կասկած չկա, որ Սովետների հարձակման կատաղի ոգին զինվորի տեսակետից խոստովանության արժանի է»:

Գերմանացիները անվերջ չեն կարող ծամծմել նաև բոլորին զզվեցրած այն փաստը, թե Կարմիր Բանակը «տասնապատիկ» գերազանցում է գերմանական բանակին: Չէ՞ որ հիտլերյան Գերմանիայի և նրան «դաշնակից» ու նրանից վասալական կախում ունեցող երկրների (Իտալիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ֆինլանդիայի, Բուլղարիայի) բնակչությունը Ստալինգրադի մոտ մղված մարտերի պահին



համարյա համազոր էր Սովետական Միության բնակչությանը: Դրան պետք է ավելացնել, որ Գերմանիան պատերազմի առաջին հինգ ամսում գրավել էր սովետական տերիտորիայի մի մասը և այդտեղից երկու տարի շարունակ բնակիչներին քշում էր գերմանական տաժանակրություն: Օկուպացված երկրներից Գերմանիա է քշվել 10—12 միլիոն բանվոր: Հետևաբար մոտավորապես այդքան էլ գերմանացի է ազատվել ռազմաճակատի համար: Չնայած այս բոլոր ակնհայտ փաստերին, հիտլերյան պրոպագանդիստները ամեն տեսակ մահանաների և խորամանկությունների են դիմում: Այսպես, այս տարվա հունվարի վերջին թյուրքական ժուռնալիստ Էրքիլեթը, որը, ինչպես հայտնի է, հանդիսանում է գեբբելսյան պրոպագանդայի խոսափող, հավաստացնում էր, թե Սովետական Ռուսաստանը ամբողջ աշխարհից թաքցրել է 40 միլիոն բնակչություն, և այդ 40 միլիոնը բաղկացած է այնպիսի մարդկանցից, որոնց հասակը 50 տարուց ավելի չէ: Բայց ո՞վ կհավատա այդպիսի ծիծաղելի հայտարարության: Եթե այսօր թշնամին ընդգծում է Կարմիր Բանակի թվական գերա-

կչությունը, սակայն այդ վկայում է միայն այն, որ նա ընդունում է, թե սովետական հաղորդագրությունները հիտլերյան բանակի հսկայական կորուստների մասին ճիշտ են:

Այժմ Կարմիր Բանակի հաջողությունները բացատրելու համար անպետք է նաև «սեզոնային ստրատեգիայի» գեբբելսյան թեորիան: 1943—1944 թվերին մղած մարտերի փորձը միանգամայն հերքեց այդ «թեորիան», քանի որ ապացուցեց, որ Կարմիր Բանակը գերմանացիներին խփում է տարվա բոլոր եղանակներին: Դիտմարը վերջնականապես խճճվեց նաև ռուսական ճանապարհազրկության հարցում: 1944 թ. փետրվարի 15-ի իր տեսության մեջ նա օրհնում էր այդ ճանապարհազրկությունը, որը իբր թե ապահովում է գերմանացիների «պաշտպանական հաջողությունը»:

«Ճանապարհազրկությունը և մեր զորքերի համառ դիմադրությունը,— հավաստիացնում էր Դիտմարը,— ավելի մեծ դեր են խաղացել, քան հակառակորդի օպերատիվ և տակտիկական ճարպկությունը»:

Մեկ ամիս հետո՝ մարտի 14-ին, Դիտմարն արդեն անիծում էր ճանապարհազրկությունը:



«Այժմ ճանապարհազրկությունը հանդիսանում է այն ճեղքումների պատճառը, որ թշնամուն հաջողվել է ձեռք բերել»:

Իրոք որ տխուր է թիկունքային գերմանական գեներալի ճակատագիրը, որը ըստիպված է շարադրել անկասկած պարտությունների կասկածելի բացատրություններ:

Այժմյան իրադրության համար անպետք է նաև «էլաստիկ պաշտպանությունը», որի օգնությամբ գերմանացիները անցյալ տարի փորձում էին բացատրել իրենց պարտությունները: Եվ ի՞նչ էլաստիկ պաշտպանություն, երբ այդ պաշտպանությունը արդեն փոխադրվել է Ռումինիա և բախում է Գերմանիայի դռները:

Գերմանացիներին մնում է միայն մի ելք՝ աշխարհը վախեցնել «բոլշևիզմի» մղձավանջով: Սակայն այստեղ էլ հիտլերյան կլիկը կրախի է հանդիպում: Հիտլերի 1944 թ. հունվարի 30-ի ճառից հետո, որը այս առթիվ նվաղկոտ գուշակություններ էր անում, անգլիական «Դեյլի տելեգրաֆ էնդ մորնինգ պոստ» թերթը գրել է. «Հիտլերը կորցրել է ամեն ինչ, բացի իր սևեռուն գաղափարներից»: Այդ ձևով էր այն ժամանակ ար-

տահայտվում անգլիական ու ամերիկյան թերթերի ճնշող մեծամասնությունը:

Բայց հիտլերականները չեն հրաժարվում իրենց «սևեռուն գաղափարներից»: Նրանք չեն հանգստանում: Նրանք չեն կարողանում հաղթահարել իրենց երկյուղը և փորձում են նրանով վարակել ամբողջ Եվրոպան, ամբողջ աշխարհը: Գեբբելսի և նրան ենթակա ամբողջ մամուլի բոլոր գրվածները լի են անթաքցնելի երկյուղով: «Արևելքը մեր բախտն է, որից խուսափել չենք կարող»— աղաղակում է այս տարվա ապրիլի 3-ին «Մինակեր ցայտունգ» թերթը: Նույն օրը Գեբբելսը ինքը հանդես է եկել «Ռայխ» թերթում մի հոդվածով, որը նա վերնագրել է «Եվրոպական նարկոզ», բայց որը ավելի ճիշտ կլինի կոչել «SOS»:

«Օկուպացված երկրներում պարտիզանական շարժումը իր մեծ մասով կողմնորոշվում է դեպի Մոսկվա»—աղեկտուր ձայնով ճչում է Գեբբելսը: Հոդվածը լի է այսպիսի արտահայտություններով՝ «սպառնացող վտանգը», «ռազմական վտանգը», «մեր օրերի ողբերգական երկընտրանքը», «վճռական կրիզիսը», «տափաստանային ջրհեղեղը» և այլն:

Իսկ «Ռայխ» թերթում ապրիլի 8-ին



զետեղած իր հերթական հոդվածը Գեբբելսը վերնագրել է. «Ինչու մենք այսպիսի դժվարություններ ենք կրում»: Վերնագիրը համապատասխանում է իրերի դրությանը:

Հիտլերականները հաշվի են առնում, որ Կարմիր Բանակի հաղթանակները բացառապես բարենպաստ պայմաններ են ստեղծել Անգլիայի ու ԱՄՆ-ի զինված ուժերը Եվրոպայի մայր ցամաքում ափ հանելու համար: Օրինակ՝ Կարմիր Բանակի մարտապրիլյան հարձակումը հարավային ռազմաճակատում Դիտմարը անմիջապես կապում է անգլո-ամերիկյան զորքերի առաջիկա գործողությունների մայր ցամաքում:

Դիտմարը մարտի 8-ին հայտարարել է հետևյալը. «Չի բացառված այն հնարավորությունը, որ Արևմուտքում ներխուժման առաջին գործողությունը, եթե չխոսենք անգլո-ամերիկյան հարձակման մասին օդում, կխաղացվի արևելյան ռազմաճակատում: Այս քանի օրերս Շեպետովկայի շրջանում սկսված խոշոր հարձակումը անշուշտ հանդիսանում է «խրախուսիչ հարձակում», նույնիսկ սեփական նպատակների առկայության դեպքում: Միան-

գամայն բնական է, որ այդ հարձակումը մեր հրամանատարության և ռազմաճակատի առաջ նորից ծանր խնդիրներ կդնի: Նմանապես ակնհայտ է, որ այդ հարձակումը հանդիպում է Արևելքում և Արևմուտքում, ինչպես նաև միջերկրածովյան տարածության մեջ կոմբինացված գործողությունների մի մասը»:

Այս թեմային Դիտմարը վերադառնում է նաև իր հաջորդ տեսության մեջ: Իսկ գերմանական պրոպագանդայի արված թեման է այն պնդումը, թե հիտլերյան բանակը սովետա-գերմանական ռազմաճակատում պարտություններ է կրում այն պատճառով, որ այդ բանակի գլխի ուժեր իբր թե փոխադրվել են արևմուտք, որտեղ նրանք սպասում են ներխուժման: Բայց այս պնդման դեմ է խոսում իրադարձությունների ամբողջ տրամաբանությունը: Եվ իրոք, Հարավային ռազմաճակատում մարտ-ապրիլյան մարտերի հետեվանքով հիտլերյան բանակը ոչ լրիվ ամիսներով կորցրել է միայն սպանված և գերի կես միլիոն մարդ (չհաշված Ղրիմում կրած կորուստները): Եթե սրան ավելացնելու լինենք վիրավորների թիվը, որն առնվազն մեկ ու կես—երկու անգամ ավե-



լի պիտի լինի սպանվածների թվից (ավելի քան 400 հազար), ապա կստանանք մի թիվ, որը մեկ միլիոնից շատ ավելի է, իսկ չեզոք և դաշնակից երկրների տեսաբանների ամենաչափավորացված հաշիվներով անգամ՝ հիտլերականները արևմուտքում ունեն մոտավորապես 700—800 հազարանոց բանակ:

Ռեյտեր գործակալության տեսաբանը ապրիլի 17-ին նշել է, որ արևմտյան, այսպես կոչված «ներխուժման ծովափի» երկայնքով գերմանացիները պահում են 730 հազար մարդ: Նյու-Յորք Թայմսի» լոնդոնի թղթակից Միդլտոնը գտնում է, որ գերմանացիները Արևմտյան Եվրոպայում ունեն 69 դիվիզիա, որոնց մեջ կա 760 հազար մարդ: Հետևաբար, սովետա-գերմանական ռազմաճակատի Հարավային հատվածում գերմանացիները ավելի քան մեկ ամսվա մարտերի ընթացքում 1½—2 անգամ ավելի մարդ են կորցրել, քան Արևմուտքում ունեցած իրենց ամբողջ բանակը: Մի բան անկասկած է. եթե հիտլերականները այս տարվա մարտ ամսին արևմուտքում ունենային ռեզերվներ, որոնք նրանց կարող են փրկել դաժան պարտությունից, որը նրանց նաև ավելի

քան մեկ միլիոն մարդ. և նրանց բանակը ետ շպրտվեց մինչև Կարպատները, սակայն նրանք այդ ռեզերվները անշուշտ կօգտագործեին: Բայց բանն էլ հենց այն է, որ ստրատեգիական այնպիսի ռեզերվներ, որոնք կարողանային սովետա-գերմանական ռազմաճակատում ուժերի փոխհարաբերությունը փոխել հօգուտ հիտլերյան բանակի, Գերմանիան չունի ո՛չ արևմուտքում, ո՛չ հարավում և ո՛չ էլ առհասարակ: Դա պարզապես գեբբելսյան մի սուտ է, որի նպատակն է վախեցնել հակառակորդին արևմուտքում, արդարանալ մասսաների առաջ սեփական թիկունքում, և պատրանքներ սերմանել, թե իբր հիտլերականները ի վիճակի են հակահարված տալու ներխուժմանը Եվրոպայի արևմուտքում և հարավում:

Այս տարվա ապրիլի 22-ին անգլիական ռադիոն հաղորդում էր գեներալ լեյտենանտ Ռեյսառնի տեսությունը, որը գերմանական ռեզերվների մասին հայտարարել է.

«Գերմանական ռազմաճակատի գիծը ամենևին այնքան չի կրճատվել, որ նրա տարածությունը համապատասխանի գերմանական բանակի այժմյան մարտական



ուժին: Ընդհակառակը, ռազմաճակատի գիծը նույնքան երկար է, որքան և առաջ և առաջվանից ավելի ոլորապտույտ է ու խոցելի: Գերմանական այսօրվա ռազմաճակատը կարելի է պահպանել միայն պահեստի բանակների օգնությամբ: Բայց այդպիսի պահեստի բանակներն են, որ հենց չկան»:

Այժմ գաղտնիք չէ, որ գերմանական հրամանատարությունը արևմուտքից արևելք զորքեր է փոխադրում՝ սովետա-գերմանական ռազմաճակատի իր զորքերին օգնելու համար: «Դեյլի տելեգրաֆ էնդ մորնինգ պոստ» թերթը մայիսի 3-ին մեջ է բերում Ստոկհոլմի իր թղթակցից Օսլոյից Գուլդինգի հոդվածը, որտեղ նա գրել է. «Այժմ գերմանացիները Նորվեգիայում առաջին գծի տանկային զորքեր չունեն: Այնտեղ գտնվող զրահատանկային վերջին դիվիզիան, այն է՝ 25-րդը փոխադրվել է ռուսական ռազմաճակատ սրանից մի քանի շաբաթ առաջ: Գերմանական ավիացիան Նորվեգիայում ունի հարյուրից էլ պակաս ինքնաթիռ, որոնց մեծ մասը հետախուզիչ մեքենաներ են»:

Ապրիլի 9-ին «Նյու-Յորք Թայմսի»

Լոնդոնի թղթակից Միդդլտոնը հաղորդել է.

«Գերմանացիները թուլացրել են արևմուտքում այդքան դժվարությամբ ստեղծված իրենց բանակը: Գերմանիայում ներխուժումը դիմադրելու համար վարժեցված դիվիզիաները ուղարկվել են արևելք: Գնացքները Նորվեգիայից, Ֆրանսիայից և Դանիայից գնում են Բալկանները, այնտեղ քայքայվող գերմանական ռազմաճակատը»:

Կարմիր Բանակի հարձակումը հիտլերյան Գերմանիային կանգնեցրել է կատաստրոֆայի առաջ: Եվ այստեղ հիտլերյան պարագլուխների ոչ մի հնարավորություն չի օգնի: Այդ փաստը չեն փոխի նաև Գեբբելսի արտակարգ կարգադրությունները: Այդ կարգադրություններից մեկը հայտաբերվել է Կարմիր Բանակի ձեռքն ընկած ռազմական ավարի մեջ: 1943 թվի դեկտեմբերի 9-ի թվակիր մի գաղտնի կարգադրության մեջ Գեբբելսը գրել է.

«Խնդրում եմ միջոցներ ձեռնարկել, որպեսզի «կատաստրոֆա» բառը գործածությունից հանվի, ինչպես և կազմակերպական բոլոր պլաններից, հրամաններից և կարգադրություններից, քանի որ այդ բա-



ռը վատ ազդեցություն է գործում հոգեբանական և քաղաքական տեսակետից»:

Ոչ մի հրաման և ոչ մի այլ միջոցով հիտլերականները չեն կարող կանխել անխուսափելի կատաստրոֆան:

Ապրիլի 20-ին թյուրքական «Ուլուս» թերթի գլխավոր խմբագիր Աթայը Գերմանիայի մասին գրել է.

«1944 թ. գարնանը մենք մեզ արդեն չենք հարցնում, թե այսուհետև գերմանացիներն ի՞նչ պիտի անեն: Այն հսկան, որը մայիսյան ծաղիկների և դեկտեմբերյան ձյունի միջև ընկած ժամանակամիջոցում ճզմեց մի քանի պետություն, այժմ ինքը դողում է իր սեփական կյանքի համար: Չնայած դրան, չպետք է մոռանալ, որ Գերմանիան, որը պատերազմի առաջին տարիների ընթացքում եղել է սարսափելի որսորդ, այժմ ևս չի դադարել վտանգավոր լինելուց, որպես վիրավոր գազան»:

***.

Հիտլերականների գլխավոր նպատակն այն է, որպեսզի տարաձայնություններ առաջացնեն Անգլիայի, ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի միջև: Նրանք այս նպատակով փորձեցին օգտագործել նաև սովետա-գերմանական ռազմաճակատում այս ձմեռ և վաղ գար-

նանք իրենց կրած խիստ ծանր պարտությունը: Նրանք սկսեցին մոլեգին ձեռնախաղ «բոլշևիզմի վտանգի» շուրջը՝ հատկապես այն պահին, երբ Կարմիր Բանակը նրանց զորքերը վռնդելով սովետական հողից, անցավ ՍՍՌՄ պետական սահմանը: Բայց այդ փորձն էլ կրախի հանգեց:

Այս տարվա ապրիլի 2-ին ընկեր Մոլոտովը հայտարարեց, որ Կարմիր Բանակի մուտքը ռումինական տերիտորիան նպատակ չի հետապնդում ձեռք բերելու ռումինական տերիտորիայի որևէ մաս կամ փոփոխելու Ռումինիայում գոյություն ունեցող հասարակարգը, այլ թելադրվում է բացառապես ռազմական անհրաժեշտությամբ: Անգլիական «Դեյլի տելեգրաֆ էնդ մորնինգ պոստ» թերթը ապրիլի 4-ին այս առթիվ գրել է.

«Մոլոտովի հայտարարությունը մարմնավորում է ռուսական քաղաքականության բնորոշ ռեալիզմը և ավելի քան երբևիցե հիմար դրության մեջ է դնում Գեբբելսի և նրա բարեկամների պրոպագանդան, «բոլշևիզմի սպառնալիքի» վերաբերյալ»:

Ընկեր Ստալինի այս տարվա մայիսի 1-ի հրամանը խորտակիչ հարված հասցրեց դաշնակիցների շարքում տարաձայ-



նություն առաջ բերելու հիտլերականների փորձերին: Այդ նշել է դաշնակից և չեզոք երկրների ամբողջ մամուլը:

Արդեն մայիսի 1-ին, հրամանը հրապարակելու օրը, անգլիական «Ստար» թերթը հայտարարել է, որ հրամանը հանդիսանում է «խոշորագույն ավանդ դաշնակիցների միասնության գործի մեջ»: «Ստալինի խոսքերին,— գրել է նույն օրը անգլիական «Իվնինգ նյուս» թերթը,— հատուկ է վստահություն, մեծահոգություն և եղբայրական վերաբերմունք, որոնք ծնվել են Թեհրանում»:

Անգլիական մի այլ թերթ՝ «Յորկշիր պոստը» գրել է, թե ընկեր Ստալինի մայիսմեկյան հրամանում «օկուպացված ամբողջ Եվրոպայի քաղցածներն ու ճնշվածները կլսեն այն բանի ազդանշանը, որ ազատագրումն ու օգնությունը արդեն մոտենում են: Թշնամիների համար դա Միավորված ազգերի պատասխանման վերաբերյալ նրանց հույսերի խորտակումն է»:

Ամերիկյան ռադիոկայաններից մեկը մայիսի 2-ին հաղորդել է «Բալտիմոր սեն» թերթի կարծիքը, որ նվիրված է ընկեր Ստալինի մայիսմեկյան հրամանին:

«Այդ հրամանը,— ասված է Թերթի առաջնորդող հոդվածում,— տալիս է այն բանի նշանակալից հաստատումը, որ չնայած թշնամու պրոպագանդայի տրյուկներին, ՍՍՌՄ և նրա արևմտյան դաշնակիցների միջև զարգացել է համագործակցության ոգին: Ստալինն, իհարկե, ընդգծել է Ռուսաստանի նշանակալից նվաճումները պատերազմում մինչ այսօր և կանխատեսում է ավելի ևս նշանակալից սխրագործություններ: Բայց այնուհետև հրամանը պարունակում է եվրոպական առանցքի ոչնչացման համար մղվող պայքարում Անգլիայի ու Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ լիակատար մարտական համագործակցության հաստատելու թեման: Վարչապետ Ստալինի հրամանը համակված է բարեկամական ոգով և պատմական պահին ծառայում է որպես հուսադրող նախանշան»:

Անգլիական ռադիո-մեկնաբան Թոմաս-Կադեստը ընկեր Ստալինի հրամանին նվիրված իր ելույթի մեջ հետևյալ պատկերավոր համեմատությունն է անում.

«Մարշալ Ստալինը նախազգուշացրել է իր զորքերին, որ անհրաժեշտ է կրնկակոխ հետապնդել գերմանական վիրավոր գազա-



նին և նրան ջախջախել իր սեփական որջում: Միայն այն ժամանակ կարելի է հույս ունենալ, թե սկսված գործը հաջողությամբ կվերջանա... Որսորդները գիտեն, որ վիրավոր գազանը առանձնապես վտանգավոր է և նրան հարկավոր է անպայման վերջ տալ: Լինում են այնպիսի որսորդներ, որոնց մասին նրանց ընկերները ասում են. «Ես չէի ցանկանա նրա հետ գնալ վագրի դեմ»: Բայց երեք որսորդ, այն է՝ Անգլիան, ԱՄՆ-ը և ՍՍՌՄ-ը, որոնք հետապնդում են վիրավոր գազան Գերմանիային, գիտեն իրենց ուժերը և որսի են գնում միասին»:

Անգլիական մի այլ ռադիո-տեսաբան՝ Բրենտ-Վուդը իր տեսության մեջ, որը հաղորդվել է այս տարվա մայիսի 1-ին, ընկեր Ստալինի մայիսմեկյան հրամանի առթիվ հայտարարել է.

«Մարշալ Ստալինը խոսում է համատեղ հարվածի մասին արևելքից, որը զուգորդվելու է անգլիացիների ու ամերիկացիների հարվածին արևմուտքից: Միայն այդ ձևով,— նշում է նա,— Եվրոպան կարելի է վերջնականապես ազատագրել և ֆաշիստական բռնակալությունը վերջնականապես ոչնչացնել»:

Այդ հարվածը կհասցվի, և գերմանացիներն այդ գիտեն: Զարմանալի չէ, որ Բեռլինի ռադիո-մեկնաբաններից մեկը՝ վերջերս պանդատվելով Գերմանիայի վիճակից, ասել է. «Ավելի դժվար է լինել զնդան, քան մուրճ»: Նա կարող էր նաև ավելացնել՝ «քան մուրճ ու մանգաղ»:

Այսպիսով Կարմիր Բանակի հաղթական հարձակումը ավելի ևս ամրացրել է Անգլիայի, ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի մարտական դաշինքը և հող է պատրաստել թշնամուն համատեղ խորտակիչ հարված հասցնելու համար: Վերջերս դաշնակից և չեզոք երկրների մամուլը առանձին ուժով ընդգծել է, որ Կարմիր Բանակի հաղթական հարձակումը առավելագույն չափով հեշտացրել է անգլո-ամերիկյան զինված ուժերի ափ հանումը եվրոպական մայր ցամաքում:

Լոնդոնի ռադիոն ապրիլի 14-ին հաղորդել է Պատրիկ Լեյսիի տեսությունը, որը հայտարարել է.

«Ռուսները մեզ և ձեզ համար մեծագույն ջանք են գործադրում և նշանակալից չափով հեշտացնում են մեզ համար պատերազմի ելքը որոշելը: Ռուսական ռազմաճակատում մոտեցող վախճանի հենց զգացմունքը կարծես լարում է անգլիական



տրամպլինի զսպանակը արևմտյան ռազմաճակատը ցատկելու համար: Ահա թե ինչպես է մեր վրա ներգործում ռուսական հարձակումը»:

Ապրիլի 19-ին «Նյու-Յորք պոստ» թերթը հրապարակել է Վաշինգտոնի իր թղթակից Ջայլզի հաղորդագրությունը, որը հայտնել է, թե Վաշինգտոնի բարձրագույն շրջանները «ապշել են Ղրիմում և Ուկրաինայում տեղի ունեցող վերջին հարձակումների հզորությամբ: Գործողությունների թափը զգալիորեն գերազանցում է այն ամենը, ինչ նախատեսել են ռազմական պլանները մշակող անձինք: Իրոք որ ռուսների հարձակումը վերադարձրել է այն հույսը, թե պատերազմը Եվրոպայում կարող է վերջանալ 1944 թվին»:

Այնուհետև Ջայլզը նշել է.

«Շատ ծանր դրության մեջ լինելով, նացիստները ստիպված էին Արևմտյան Եվրոպայից ետ քաշել մարդկային ռեզերվները, թեև նրանք աշխատում էին այդ փաստը ամեն կերպ թաքցնել գերմանական ժողովրդից: Երբ Անգլիայից կսկսվի ներխուժումը օկուպացված Եվրոպան, Սովետական Միությունը կբազմապատկի իր ջանքերը և,

ոչ մի կասկած չկա, որ նա ընդունակ է այդ իրագործելու»:

Դաշնակից երկրներում բոլոր լուրջ թերթերը գտնում են, որ Կարմիր Բանակի հաղթանակները, մանավանդ այս տարվա մարտ—ապրիլյան մարտերում, հակահիտլերյան կոալիցիայի համար ռեալ հնարավորություն են ստեղծել թշնամուն կարճ ժամկետում ջախջախելու համար:

Դաշնակից և չեզոք երկրների մամուլը նշում է Կարմիր Բանակի հաղթանակների բացառիկ պատմական նշանակությունը և ընդունում է, որ միանգամայն հասունացել է անգլո-ամերիկյան զինված ուժերը Եվրոպայի մայր ցամաքը ափ հանելու մոմենտը:

ՅԱ. ՄԻՐՈՎ

„Большевик" № 7



# ՕՐԻՆԱԿԵԼԻ ԱԳԻՏԲՐԻԳԱԴԱՆ

Հայրենական պատերազմի տարիներին փոխվել են մեր մասսաներին կազմակերպող, մոբիլիզացնող բոլշևիկյան ագիտացիայի և պրոպագանդայի ձևերը:

Հայրենական պատերազմի սկզբի շրջանում մեր տեղական պարտիական ղեկավար ընկերների նախաձեռնությամբ կազմակերպվեցին ագիտբրիգադաներ: Այդ ժամանակվանից էլ ՀԿ(բ)Պ Երքաղկոմի կողմից կազմակերպվեց և սկսեց գործել 6 ագիտբրիգադա:

Ագիտացիայի այս ձևը գոյություն է ունեցել նաև 1918—1920 թ. թ. քաղաքացիական կռիվների շրջանում, որը հաջող քննություն էր բռնում:

Հայրենական պատերազմի շրջանում կազմակերպված և ներկայումս գործող ագիտբրիգադաներն իրենց լիովին արդարացնում են: Նրանք խոշոր աշխատանք են ծավալում, արժանանալով մեր աշխատավո-

բական լայն խավերի ջերմ ընդունելությանը և բարձր գնահատականին:

Ագիտբրիգադաների լավ ընդունելությունը հատկապես բանվորների և կոլտնտեսականների կողմից՝ բոլորովին պատահական չէ, որովհետև նա խոսք կենդանի ձև է: Ագիտբրիգադան կազմըված է քաղաքական և ռազմական զեկուցողներից, երգի, երաժշտության ու պարի կատարողներից, արտասանողներից (առմունքի արվեստի կատարողներից), գրողներից և այլն:

Նման կազմով այս կամ այն երգի կատարման դեպքում հնարավոր է, որ բոլշևիկյան ագիտացիան դառնում է ավելի հուզող, ներգործող, դաստիարակող և կազմակերպող: Այդ բանը հաստատվում է մեր բրիգադաների կատարած աշխատանքի հարուստ փորձով: Իրենց փորձի տեսակետից աչքի են ընկնում ընկ. ընկ. Ա. Վշտունու, Գ. Սարյանի, Ա. Նաղիևի, Հ. Հաբեթյանի, Ս. Բաղյանի և այլ ագիտբրիգադաները:

Մեր նպատակն է ցույց տալ ագիտբրիգադաներից մեկի աշխատանքային փորձը: Այդ նպատակով վերցնենք ընկ. Հ. Հա-



բեթյանի ագիտբրիգադան: Այդ բրիգադայի կազմում աշխատում են շքանշանակիր Հայֆիլհարմոնիայի Սրբելյան գործիքների անսամբլը՝ շքանշանակիր Գուրգեն Միրզոյանի ղեկավարությամբ ու Շողիկ Մկրտչյանի մասնակցությամբ, հայկական, ռուսական և եվրոպական երգ-երաժշտական կատարողները, մեդալակիր պարուհի Ս. Վարդանյանը, երգիծաբան Հ. Սաբանյանը, բանաստեղծներ Սողոմոն Տարոնցին և ուրիշներ: Բոլորն էլ ձեռնհաս ուժեր են: Վերջերս ագիտբրիգադայում ընդգրկվել են Պետօպերայի, Կոնսերվատորիայի և Օպերետային թատրոնի ու Ռադիոկոմիտեի լավագույն ուժերը:

Տվյալ դեպքում մեզ հետաքրքրող բրիգադայի աշխատանքների մեջ բնորոշ է նրա կազմակերպվածությունը, նվիրվածությունը աշխատանքում, օղակների համագործակցությունը և անսամբլային կատարումը: Դրա շնորհիվ ագիտբրիգադան վերջին մեկ և կես տարվա իր գործունեության ընթացքում պարապուրդ չի ունեցել, չնայած, որ ելույթները երբեմն կապված են եղել որոշ դժվարությունների հետ:

Նկատի ունենալով, որ այդ ագիտբրիգադան մեծ մասամբ ելույթ է ունենում արտադրական ձեռնարկություններում, այդ իր դրոշմն է դրել խմբի ռեպերտուարի վրա, այդ պատճառով էլ ծանրությունը գլխավորապես ընկել է շքանշանակիր քյամանչիստ Գուրգեն Միրզոյանի խմբի վրա:

Անսամբլում բարձր է պատասխանատվության զգացումը դեպի հանդիսատեսը և նրա պահանջները: Անսամբլի բոլոր անդամներն էլ ապրում են իրենց աշխատանքով, իսկ դա շատ կարևոր է արվեստի կատարման տեսակետից: Դրանի համաձայն նրանք ամիսը մեկ անգամ պետք է ելույթ ունենան, սակայն 1944 թ. մարտ ամսի առաջին տասնօրյակում նրանք ունեցան 3 համերգ Երևանի արտադրական ձեռնարկություններում:

Ընկ. Միրզոյանի անսամբլի անդամները գիտակցում են, որ հայրենական պատերազմի ժամանակ թիկունքում մնալով նրանք իրենց ամբողջ ջանքերը պետք է գործի դնեն ռազմաճակատին ու թիկունքին օգնելու, երաժշտական խոսքի միջոցով մասսաներին կազմակերպելու և մեր



ընդհանուր թշնամու դեմ մոբիլիզացնելու համար:

Մեր ագիտբրիգադան յուրաքանչյուր ելույթից հետո հաշվի է առնում հանդիսականների և առանձին ընկերների պահանջները, որի օգնությամբ էլ կազմում է իր հետագա ելույթների ռեպերտուարը:

Ընկ. Միրզոյանի անսամբլը խրախուսանքի արժանացել է մեր ժողովրդի և վերադաս օրգանների արժանի գնահատականին: Անսամբլի ջերմ ընդունելությունը հանդիսատեսների կողմից հաստատվում է Հայաստանի տարբեր շրջաններից, ինչպես նաև Անդրկովկասի մյուս վայրերից ստացված գնահատականներով:

Միայն վերջին մեկ և կես տարվա ընթացքում անսամբլը Երևանում և Հայաստանի շրջաններում տվել է մոտ 400 համերգ, որին մասնակցել են տասնյակ հազարավոր մարդիկ: Բերենք այդ բազմաթիվ ելույթներից մի քանիսի մասին հանդիսատեսների տված գնահատականը:— Գրող Աշոտ Գրաշին անսամբլին մի այսպիսի բանաստեղծություն է նվիրել.

Շողիկի երգում են լսեցի
Մանթաշի բերդերում բլբուլների
Ձայներն անուշ ու սիրելի,—
Նրանց առաջին սիրտս բացի:

Այնուհետև.

Երգում ժողովուրդ, երգիր, շողա՝
Ականակիտ ձայնով քո երգչուհու,
Ելևէջներից թող այդ անհուն
Սրտումս հույզի անձրև տեղա...

Բաքվի «Կոմունիստ» թերթը գրում է.
«...Ադրբեջանի Մ. Մագոմաևի անվան պետական ֆիլհարմոնիայում մեծ հաջողությամբ ելույթներ է ունեցել Հայկական ժողովրդական գործիքների անսամբլը շքանշանակիր Գուրգեն Միրզոյանի ղեկավարությամբ և հայկական ժողովրդական երգերի հայտնի կատարող Շողիկ Մկրտչյանի մասնակցությամբ:

Ահա Շողիկ Մկրտչյանը:

Մեկեն ասես թե պոռթկում է ծափահարությունների որոտի տակ Ֆիլհարմոնիայի հսկայական դահլիճը... Հանդիսատեսների կողմից ջերմ ընդունելություն գտան նաև անսամբլի մյուս մասնակիցները, որոնք հիանալի են կատարում հայ-



թյունները...»:
կական ժողովրդական ստեղծագործու-

Խրախուսանքի արժանի են բրիգադայի պարուհի Սոֆիկ Վարդանյանի և երգիծապան Հակոբ Ասլանյանի աշխատանքը: Ինչպես հայտնի է, ընկ. Ասլանյանը և՛ ստեղծագործում է, և՛ կատարում. Նրա կատարումը անկրկնելիորեն հարստացնում է ու հետաքրքիր է դարձնում բրիգադայի ելույթը: Նրա մոտ զգացվում է, իհարկե որոշ իմաստով, ակտուալ թեմատիկայի ռեպերտուարի պակաս:

Սակայն նույնը չի կարելի ասել ագիտբրիգադայի մյուս ուժերի մասին: Դեռ չի կարելի բավարար համարել բրիգադային մասնակցող Ռադիո կոմիտեի, Կոնսերվատորիայի և մյուս օղակների ուժերի մասնակցությունը:

Երևանի պարտքագրկոմին կից ագիտբրիգադաների աշխատանքներում մասնակցություն են ցույց տալիս Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Արվեստի գործերի կոմիտեն, Ռադիո կոմիտեն և Հայֆիլհարմոնիան:

Սակայն մինչև այժմ այդ աշխատանք-

ներից գրեթե դուրս են մնացել Պետօպերայի, Սունդուկյանի, Ստանիսլավսկու անվան և Պատանի հանդիսատեսի թատրոնները, Խորեոգրաֆիկ, Թատերական և Երաժշտական ուսումնարանները, Գեղաշխի միությունը:

Մեր անվանի և վաստակավոր կատարողները վերջին շրջանում լիովին դուրս են մնացել ավտոբրիգադաների աշխատանքներից: Մեզ թվում է, որ այդ շնորհակալ աշխատանքում մեծ բավականությամբ կցանկանան մասնակցել վերոհիշյալ ընկերներից շատերը: Կասկածից վեր է, որ արվեստի ճակատի անվանի կատարողների մասնակցությունը էլ ավելի հետաքրքիր կդարձներ մեր ավտոբրիգադաների ելույթները: Այս հարցով պիտի մտահոգվեն Արվեստի վարչությունը և Գեղաշխ. միությունը:

Ավտոբրիգադաների աշխատանքներում վճռական նշանակություն ունի նաև ռեպերտուարի թարմությունն ու հրատապությունը, իսկ մեր ավտոբրիգադաների երգ-երաժշտության կատարողները կարող են հպարտանալ իրենց նոր գործերով (հայրենական պատերազմին վե-



րաբերող), իսկ այդ ուղղությամբ մեր կարծիքով շատ մեծ գործ կարող է կատարել Կոմպոզիտորների միությունը, ինչպես նաև Կոնսերվատորիան: Անհրաժեշտ է, որ նրանք տան ավտոբրիգադաների կատարողների համար նոր, հայրենասիրական ստեղծագործություններ:

Վերջապես ավտոբրիգադայի կոչումն իսկ ասում է, որ նրա աշխատանքում վճռական տեղը քաղաքային և ռայոնական զեկուցումներն են: Այս զեկուցումները ոչ միշտ են բավարարում ունկնդիրներին: Ավտոբրիգադաների զեկուցման (քաղաքային) թեմատիկան միշտ հայրենական պատերազմի ընթացիկ մոմենտն է:

Քաղաքային զեկուցումները սովորաբար տևում են 20-ից 25 րոպե, ռայոնականը՝ 10—15 րոպե: Որպեսզի այս զեկուցումները լինեն նպատակային, բովանդակալից և ունկնդրին հուզող ու կազմակերպող, ավտոբրիգադայի դասախոսները զեկուցման նախօրյակին կատարում են մի շարք նախնական աշխատանքներ: Զբաղվում են հանդիսատեսի ճանաչման, թեմայի հիմնական հանգուցային հարցերի ընտրության, հարցերի գրաֆիկայի մշակման խնդիրներով,

որի նպատակն է ապահովել նյութի ամբողջականությունը և ժամանակի տնտեսումը: Աշխատանք է տարվում ցուցադրական նյութերի մշակման, լեզվի պարզության, գեղեցիկ և պատկերավոր ձևով արտահայտվելու վրա: Իհարկե այս բոլորը լավ կատարելու դեպքում մենք է՛լ ավելի մեծ արդյունքի հասած կլինենք: Սակայն այս ուղղությամբ դեռ մեզ շատ բան է մնում անելու:

Ավելորդ չենք համարում նշել նաև մի այլ հանգամանք: Պետք է խոստովանել, որ ոչ բոլոր դեպքերում են մեր ակումբական պարտիական կազմակերպությունները կարողանում կազմակերպել ագիտբրիգադների ելույթները և այն ծառայեցնել բուն նպատակին: Այնտեղ, որտեղ այդ ելույթները լավ են նախապատրաստվում, անկասկած ագիտբրիգադայի ելույթը օգնում է արտադրական պլանների կատարմանը: Պետք է մեր պարտիական ակումբական կազմակերպությունները ագիտբրիգա-



դաների ելույթները խնամքով նախապատրաստեն, ծառայեցնեն բուն նպատակին: Օրինակելի և ուսանելի շատ բան կա Երքաղկոմի ագիտբրիգադաների աշխատանքներում: Հարկավոր է կազմակերպել բրիգադաների փորձի փոխանակում, յուրացնել առաջավորների աշխատանքային ոճը:

---

### ՈՒՂՂՈՒՄ

56-րդ էջի վերջին տողը և 57-րդ էջի սկզբի երկու տողը կարդալ այսպես. «... որոնք հիմնական են կատարում հայկական ժողովրդական ստեղծագործությունները...»։



ՎՖ 00765 Պ. № 407 տիրաժ 5000

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան, 1944 թ.